Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 3 (105)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1941

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 3 (105)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1941

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ





# «ՏԵՂԱԿԱՆ ՀՈՒՄՔԻՑ ԼԱՅՆ ՍՊԱՌՄԱՆ ԱՌԱՐԿԱՆԵՐԻ ԵՎ ՊԱՐԵՆԱՄԹԵՐՔԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆՆ ԱՎԵԼԱՑՆԵԼՈՒ ՁԵՌՆԱՐԿՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ»

## ՍՍՌՄ ԺՈՂԿՈՄՍՈՎԵՏԻ ԵՎ ՀԱՄ Կ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ 1941 Թ. ՀՈՒՆՎԱՐԻ 9-Ի ՈՐՈՇՈՒՄԸ ԿԵՆՍԱԳՈՐԾԵԼՈՒ ՁԵՌՆԱՐԿՈՒՄՆԵՐ

(ՀՍՍՌ ԺՈՂԿՈՄՍՈՎԵՏԻ ԵՎ ՀԿ(Բ)Պ ԿԿ-Ի 1941 Թ. ՀՈՒՆՎԱՐԻ 31-Ի ՈՐՈՇՈՒՄԸ)

*Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետը և Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմը նշում են տեղական ու շրջանային արդյունաբերության և արհեստագործական կոոպերացիայի կողմից լայն սպառման ապրանքների ու պարենամթերքների արտադրության զգալի աճը վերջին տարիների ընթացքում։*

*Քաղաքային և շրջանային արդյունաբե-*

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ





# «ՏԵՂԱԿԱՆ ՀՈՒՄՔԻՑ ԼԱՅՆ ՍՊԱՌՄԱՆ ԱՌԱՐԿԱՆԵՐԻ ԵՎ ՊԱՐԵՆԱՄԹԵՐՔԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆՆ ԱՎԵԼԱՑՆԵԼՈՒ ՁԵՌՆԱՐԿՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ»

## ՍՍՌՄ ԺՈՂԿՈՄՍՈՎԵՏԻ ԵՎ ՀԱՄ Կ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ 1941 Թ. ՀՈՒՆՎԱՐԻ 9-Ի ՈՐՈՇՈՒՄԸ ԿԵՆՍԱԳՈՐԾԵԼՈՒ ՁԵՌՆԱՐԿՈՒՄՆԵՐ

(ՀՍՍՌ ԺՈՂԿՈՄՍՈՎԵՏԻ ԵՎ ՀԿ(Բ)Պ ԿԿ-Ի 1941 Թ. ՀՈՒՆՎԱՐԻ 31-Ի ՈՐՈՇՈՒՄԸ)

*Հայկական ՍՍՌ ժողկոմսովետը և Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմը նշում են տեղական ու շրջանային արդյունաբերության և արհեստագործական կոոպերացիայի կողմից լայն սպառման ապրանքների ու պարենամթերքների արտադրության զգալի աճը վերջին տարիների ընթացքում։*

*Քաղաքային և շրջանային արդյունաբե-*

ռության արտադրանքը լայն սպառման ապրանքների գծով 1940 թվին աճեց 1938 թվի համեմատությամբ 43,2 տոկոսով, իսկ արհեստագործական կոոպերացիայի արտադրանքը նույն այդ ժամանակվա ընթացքում աճեց 64, 1 տոկոսով։

Չնայած դրան, լայն սպառման ապրանքների և պարենամթերքի արտադրությունը ռեսպուբլիկայում լուրջ կերպով հետ է մնում այդ ապրանքների նկատմամբ բնակչության աճող պահանջից։

Ապրանքաշրջանառության մեջ դեռևս մեծ է ներմուծվող այնպիսի ապրանքների և պարենամթերքի տեսակարար կշիռը, որոնց արտադրությունը միանգամայն հնարավոր է կազմակերպել տեղում։ Մինչև այժմ ներմուծման առարկա են հանդիսանում այնպիսի իրեր, ինչպես՝ թավաները, կերոսինկաները, դանակները, պատառաքաղները, գդալները, երկաթեղենը, փերանդիները, եղանները, նալի մեխը, կոշկակարական փայտամեխը, լվացքի շպիլկաները, զուգանիվները ու սայլերը, պրիմուսի ասեղները, անվայուղը (մազ) և այլն։



Միանգամայն անբավարար քանակությամբ են արտադրվում դույլեր, թասեր, վաննաներ, լվացարաններ, թիթեղյա էմալապատ ամանեղեն, մսաղացներ, բահեր մեխեր և պտուտակներ, մանհճակալներ, կահույք, խաղալիքներ և այլն, որի հետևանքով բնակչության պահանջը բավարարելու համար այդ ապրանքների մի զգալի մասը ներմուծվում է ՍՍՌՄ այլ շրջաններից։

Ծայրահեղորեն անբավարար է կազմակերպված արդյունաբերության մնացուկների օգտագործումը։

Անթույլատրելի կերպով հետ է մնում տեղական շրջանային արդյունաբերությունը։ Տեղական ռեսուրսների բաղայի վրա (պտուղներ, բանջարեղեն, վայրի մրգեր, յուղատու կուլտուրաների վերամշակումը և այլն) շրջաններում պարենամթերքի մշակման վիթխարի հնարավորությունները մնում են չօգտագործված։

Ի կենսագործումն «Տեղական հումքից լայն սպառման ապրանքների և պարենա-

մթերքի արտադրությունն ավելացնելու ձեռնարկումների մասին» ՍՍՌՄ Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշման, Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետը և Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմը որոշում են.

1. Տեղական, շրջանային և քաղաքային արդյունաբերության գծով լայն սպառման ապրանքների արտադրությունն ավելացնել՝ արդյունաբերության բացթողնման գներով 1940 թվականին եղած 16,701 հազար ռուբլուց 1941 թվականին հասցնելով մինչև 49.768 հազար ռուբլու, կամ աճ՝ 3 անգամ. արհեստագործական կոոպերացիայի գծով— 1940 թվականի եղած 155.587 հազ. ռուբլուց 1941 թվականին հասցնելով մինչև 238.075 հազար ռուբլու, կամ աճ՝ 53 տոկոսով, 1941 թվականի առաջադրանքն ընդունելով որպես նվազագույն։

2. 1941 թվականին լայն սպառման ապրանքների արտադրությունը շրջանային ու քաղաքային արդյունաբերության և արհեստագործական կոոպերացիայի գծով հասցնել հետևյալ չափերի.



| Լայն սպառման ապրանքների անունը | Չափի միավորը | Արտադրանքի քանակը 1940 թ. | Արտադրանքի քանակը 1941 թ. |
|---|---|---|---|
| 1. Գ ո ւ յ լ | հատ | 5.995 | 49.000 |
| 2. Թիթեղյա և թիթեղյա-ցինկապատ թասեր | » | 12.189 | 28.500 |
| 3. Թիթեղյա-էմալապատ ամաններ | տոննա | — | 20 |
| 4. Լվացարան | հատ | 4.640 | 20.000 |
| 5. Դանակ և պատառաքաղ | հազ. զույգ | — | 100 |
| 6. Գ դ ա լ | հազ. հատ | — | 500 |
| 7. Երկաթեղեն | հազ. ռուբ. | — | 200 |
| 8. Բ ա հ | հազ. հատ | 1.6 | 31 |
| 9. Մանգաղ | » » | 2.4 | 3.3 |
| 10. Փ ո ց խ | » » | — | 5.5 |
| 11. Բ լ ո ւ ն գ | » » | 0.2 | 5 |
| 12. Բ ե ր ո ց | » » | — | 21 |
| 13. Ն ա լ | » » | 118.3 | 174 |
| 14. Նալի մեխ | տոննա | 28 | 45 |
| 15. Մահճակալ | հատ | 13.144 | 15.930 |

| Լայն սպառման ապրանքների անունը | Չափի միավորը | Արտադրանքի քանակը 1940 թ. | 1941 թ. |
|---|---|---|---|
| 16. Մահճակալի ցանց | հատ | 256 | 12·750 |
| 17. Լվացքի շփիկա | հազ. հատ | — | 559,7 |
| 18. Կոշկակարի փայտամեխ | կիլոգրամ | — | 1·250 |
| 19. Փայտածուխ | տոննա | — | 1·000 |
| 20. Տ ո ր ֆ | » | — | 13·000 |
| 21. Զուգանիվ և սայլ | հատ | — | 4·000 |
| 22. Պ ա ր ա ն | տոննա | 42 | 60 |
| 23. Ֆ ի թ ի լ | հազ. մետր. | 2 | 70 |
| 24. Ջ վ ա լ | հազ. հատ | — | 5 |
| 25. Խուրջին | » » | — | 8 |
| 26. Անվայուղ (մազ) | տոննա | — | 130 |
| 27. Խողանակեղեն | հատ | — | 35·000 |
| 28. Կավե ամանեղեն | հազ. լիտր | 41,6 | 487 |
| 29. Ա թ ո ռ | հատ | 17·089 | 45·900 |
| 30. Զանազան սեղաններ | » | 9·347 | 16·100 |
| 31. Պահարան, շիֆոներկա, բուֆետ | » | 8·934 | 12·330 |



| Լայն սպառման ապրանքների անունը | Չափի միավորը | Արտադրանքի քանակը 1940 թ. | 1941 թ. |
|---|---|---|---|
| 32. Հյուսված տարա | հազ. հատ | — | 98 |
| 33. Ատամի փոշի | հազ. տուփ | — | 160 |
| 34. Փայտե տակառ | հատ | 1·358 | 9·300 |
| 35. Զամբյուղ և թզաման | հազ. հատ | 0,1 | 5 |
| 36. Թիթեղյա վառարան | » » | 4,3 | 13 |
| 37. Նավթի բիտոն | » » | 4,9 | 15,2 |
| 38. Նավթի լամպ | հատ | — | 3·000 |
| 39. Թուջե ձուլվածք և իրեր | տոննա | 156 | 320 |
| 40. Խ ո փ | հատ | 1·400 | 3·400 |
| 41. Կ ա ց ի ն | » | — | 2·500 |
| 42. Գոգավոր թիակ | » | 1·600 | 3·000 |
| 43. Ծուրուպներ | տոննա | 16 | 50 |
| 44. Խմորի դրանակ | հատ | — | 500 |
| 45. Կախարան | » | 1·000 | 14·800 |
| 46. Անմշակ կլյոպկա | » | — | 75·000 |
| 47. Փեթակ և շրջանակ | » | 2·800 | 4·900 |

| Լայն սպառման ապրանքների անունը | Չափի միավորը | Արտադրանքի քանակը 1940 թ. | 1941 թ. |
|---|---|---|---|
| 48. Լծասարք—Թամբային պարագաներ | հազ. ռուբ. | 386,6 | 490 |
| 49. Շինգլեա | հազ. հատ | 100 | 300 |
| 50. Հայելի | հազ. քառ. մետր | 0,8 | 19 |
| 51. Պրիմուսի ասեղ | հազ. հատ | — | 1·000 |
| 52. Թիթեղյա տակառ | » » | 2,8 | 10 |
| 53. Փայտյա սնդուկ | » » | 1,9 | 8,7 |
| 54. Պայուսակ՝ մեջքի և ձեռքի, աշակերտական պորտֆել | » » | 18,7 | 24,7 |
| 55. Շախմատ, դոմինո, շաշկի | հազ. կոմպ. | 1 | 18.7 |
| 56. Զանազան թանաքամաններ | հազ. հատ | 1,6 | 25 |
| 57. Մանկ. հեծանիվ և սայլակ հատ | | — | 1·000 |
| 58. Մանկական սահնակ | » | — | 2·500 |
| 59. Մանկական խաղալիքներ և սպորտի պարագաներ | հազ. ռուբ. | 217.8 | 423 |
| 60. Զանազան ճամպրուկներ | հազ. հատ | 38,9 | 53.6 |
| 61. Սուջուխ | տոննա | 14,4 | 58 |



| Լայն սպառման ապրանքների անունը | Չափի միավորը | Արտադրանքի քանակը 1940 թ. | 1941 թ. |
|---|---|---|---|
| 62. Ալանի | տոննա | 1,5 | 12 |
| 63. Դոշաբ | » | 5 | 33 |
| 64. Մուրաբա | » | 3,2 | 30 |
| 65. Գավիթլը և պյուրե | » | 14 | 274 |
| 66. Մրգահյութ | » | 17,4 | 121 |
| 67. Չորացրած միրգ | » | 6,1 | 110 |
| 68. Չորացրած բանջարեղեն | » | — | 52 |
| 69. Զանազան կրուպաներ | » | — | 150 |
| 70. Անալկոհոլ խմիչք | հեկտ. լիտր | 16·670 | 33,800 |
| 71. Գարեջուր | » » | 34·000 | 42·000 |
| 72. Արհեստական սառույց | տոննա | — | 800 |
| 73. Ալյուրեղեն, մարինադներ, թթուներ | » | 52,3 | 544 |
| 74. Քացախ | դեկ. լիտր | — | 4·500 |
| 75. Հաճարի յուղ | տոննա | — | 10 |
| 76. Արևածաղկի յուղ | » | 103 | 240 |
| 77. Հալվա | » | — | 60 |

3. Տեղական արդյունաբերության և արհեստագործական կոոպերացիայի ձեռնարկություններում կազմակերպել լայն սպառման ապրանքների նոր տեսակների արտադրությունը — գյուղական սայլեր, զուգանիվներ, ուսումնազննական պիտույքներ, հյուսված կահույք, ապակյա մանր տարա, վատին, թաղիքե կոշկեղեն, անվայուղ, կերոսինկաներ, դանակներ, պատառաքաղներ, գդալներ, երկաթեղեն և այլն, որոնք առաջ Հայկական ՍՍՌ-ում չէին արտադրվում։

4. 1941 թվին տեղական արդյունաբերության գծով Հայկական ՍՍՌ բոլոր շրջաններում կազմակերպել տորֆի հանույթը (որտեղ կան տորֆային ճահիճներ), կրի, կղմինդրի և կավագործական իրերի արտադրությունը։ Բոլոր շրջաններում, որտեղ [illegible] չկան, ստեղծել դարբնոցներ կամ մեխանիկական արհեստանոցներ. գումակաշինական արհեստանոցներ կառուցել Երևանում, Լենինականում, Համամլույում, Գորիսում, Կիրովականում, Մարտունիում, Դիլիջանում, Միկոյանում, Շամշադինում, Ն. Բայազետում, Ղամարլույում, Բասարգեչարում, Իջևանում, Ղափանում, Կալինինոյում, Ստեփանավանում, Մեղրիում, Նոյեմ-



բերյանում, Աղինում, Թալինում և Սիսիանում։

Կիրովականի, Գորիսի, Ալավերդու, Ղափանի, Շամշադինի, Վեդու, Բասարգեչարի, Ստեփանավանի ու Սևանի շրջաններում և Երևան քաղաքում կազմակերպել կահույքի արտադրությունն ու ռեստավրացիան։

5. Պարտավորեցնել Հայարդխորհրդին՝ Երևանում, Լենինականում, Կիրովականում, Սիսիանում և Միկոյանում, ՍՍՌՄ Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1941 թվի հունվարի 9-ի որոշմանը համապատասխան, կազմակերպել հում կաշվի և մորթեղենի վերամշակումը, պատվիրատվական հիմունքներով։

6. Արդյունաբերության մնացուկներն օգտագործելու նպատակով, 1941 թվին Լենինականի Տեքստիլ կոմբինատի մնացուկների բազայի վրա կազմակերպել վատին, պարանի, ֆիթիլի, գամակների և այլնի արտադրությունը. Լենինականի և Երևանի Մսի կոմբինատների մնացուկների բազայի վրա՝ սանրերի, կոճակների, սոսինձի, մանկական կոշկեղենի, վալենկաների, խաղալիք-թմբուկների և այլնի արտադրությունը. Երևանի մետաքսամանածային ֆաբրիկայի մնացուկների բազայի վրա՝ չեսուչայի ար-

տադրությունը (մետաքսե գործվածք), Կաշ-
վի գործարանի մնացուկների բազայի վրա՝
ուղեգորգերի, թաղիքի, բուրկաների, խաղա-
նակների, ջվալների, օճառի և մանկական
կոշկեղենի արտադրությունը. Կիրովի ան-
վան կոմբինատի մնացուկների բազայի վրա՝
տուֆաբլոկների, ռետինե ներբանների,
հեղուկ ապակու արտադրությունը. Կարի
ֆաբրիկաների մնացուկների բազայի վրա՝
մանկական հագուստեղենի, թաշկինակնե-
րի, խաղալիքների, տելոգրեյկաների ար-
տադրությունը. Կոնսերվի գործարանի մը-
նացուկների բազայի վրա՝ հնդայուղի և
հրուշակեղենի արտադրությունը. Կիրովա-
կանի Քիմգործարանի մնացուկների բազա-
յի վրա՝ դույլերի, թասերի, վառարանների և
այլ առարկաների արտադրությունը և Ա-
լավերդու Պղնձաձուլական գործարանի մը-
նացուկների բազայի վրա՝ լայն սպառման
մետաղյա իրերի արտադրությունը։

7. Հանձնարարել Հայկական ՍՍՌ Ժող-
կոմսովետին կից Պետական Պլանային
Հանձնաժողովին՝ Լուսժողկոմատի և Ֆիզ-
կուլտուրայի ու սպորտի գործերի կոմիտեի
հետ միասին տասն օրվա ընթացքում մշա-
կել տեղական արդյունաբերության և ար-
հեստագործական կոոպերացիայի ձեռնար-



կություններում ուսումնա-զննական պի-
տույքների ու սպորտային ինվենտարի ար-
տադրության հարցը, այն հաշվով, որ լրի-
վին բավարարվի ռեսպուբլիկայի պահանջը։

8. Առաջարկել Հայկական ՍՍՌ Ժողկոմ-
սովետին կից Պետպլանին՝ հինգ օրվա ըն-
թացքում Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին
առաջարկներ ներկայացնել միութենական
և ռեսպուբլիկական արդյունաբերության
ձեռնարկություններին կից եղած լայն ըս-
պառման առարկաներ արտադրող այն ցե-
խերի մասին, որոնց սարքավորումը, հար-
մարանքները և մնացուկները պետք է հան-
ձընվեն տեղական արդյունաբերության և
արհեստագործական կոոպերացիայի ձեռ-
նարկություններին, այդ ցեխերում մշակվող
ապրանքների արտադրությունը կազմակեր-
պելու համար։

9. Մրգեղենի (խաղող, դեղձ, ծիրան,
սալոր և այլն) չորացման պլանը հաստա-
տել 240 տոննա, այդ թվում՝ Հայկոոպի
գծով— 100 տոննա, Առևտրի ժողկոմատի
գծով—110 տոննա, Հայարդխորհրդի գծով
— 20 տոննա և Հաշմկոոպմիության գծով
—10 տոննա։

10. Վայրի պտուղների մթերման 1941
թվականի առաջադրանքը հաստատել Հայ-

կոոպի գծով— 1715 տոննա և շրջարդկոմբինատների գծով— 1195 տոննա։

11. Բանջարեղեն թթու դնելու 1941 թվականի պլանը հաստատել 2330 տոննա, այդ թվում Հայկոոպի գծով—1200 տոննա, առևտրի ժողկոմատի գծով—900 տոննա, Հայարդխորհրդի գծով— 150 տոննա և Հաշմկոոպմիության գծով— 80 տոննա։

12. Խոզերի փրացման 1941 թվականի պլանը հաստատել 3.475 գլուխ, այդ թվում՝ Առևտրի ժողկոմատի գծով— 2.000 գլուխ, Հայկոոպի գծով— 700 գլուխ, Հայարդխորհրդի գծով— 80 գլուխ, Հաշմանդամների կոոպերացիայի գծով— 70 գլուխ, Առողջապահության ժողկոմատի գծով—290 գլուխ, Լուսժողկոմատի գծով—220 գլուխ և Հանքշահույան տների գծով— 115 գլուխ։

13. Ձկան որսի 1941 թվականի պլանը հաստատել 300 տոննա, այդ թվում՝ Առևտրի ժողկոմատի— գծով 90 տոննա, Հայկոոպի գծով— 110 տոննա և շրջարդկոմբինատների գծով— 100 տոննա։

Ձկնորսական գետերն ու լճերը 5 տարի ժամանակով տրամադրել վերոհիշյալ կազմակերպություններին՝ ձկան որս կատարելու համար։

Առաջարկել Հայկական ՍՍՌ ժողկոմ-



սովետին կից Պետպլանին՝ Հողժողկոմատի և Սննդարդժողկոմատի հետ միասին՝ մինչև 1941 թվի մարտի 1-ը ձեռնարկումներ մշակել կոլխոզների ջրամբարային տնտեսությունը վերականգնելու ու ընդարձակելու և կոլխոզային ջրամբարներին ձկնիկներ մատակարարելու գործը կազմակերպելու վերաբերյալ։

14. Առաջարկել Հայկական ՍՍՌ ժողկոմսովետին կից Պետպլանին՝

ա) այս որոշմանը համապատասխան. տասնօրյա ժամկետում Հայկական ՍՍՌ ժողկոմսովետի հաստատմանը ներկայացնել 1941 թվին լայն սպառման ապրանքների արտադրության, վայրի պտուղների մթերման, ձկան որսի, լայն սպառման ապրանքներ արտադրող ձեռնարկությունների ընդարձակման և նոր ձեռնարկություններ կազմակերպելու վերաբերյալ առաջադրանքներ՝ ըստ առանձին շրջանների, այդ նպատակով օգտագործելով ինչպես տեղական արդյունաբերության ձեռնարկությունների կուտակումներն ու արհեստագործական կոոպերացիայի սեփական միջոցները, այնպես էլ բանկային վարկավորումը, որ նախատեսնված է ՍՍՌՄ ժողկոմսովետի

ու ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1941 թվի հունվարի 9-ի որոշմամբ.

բ) մեկամսյա ժամկետում Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետի հաստատմանը ներկայացնել ընտանի թռչունների (հավերի, բադերի, սագերի, հնդկահավերի) բազմացման ուղղությամբ կիրառվելիք ձեռնարկումների պլանը։

գ) հնգօրյա ժամկետում հայտեր կազմել այն սարքավորման, ֆոնդային հումքի և շինարարական նյութերի վերաբերյալ, որոնք անհրաժեշտ են լայն սպառման ապրանքների ու պարենամթերքի արտադրությունն ավելացնելու ուղղությամբ նշված ձեռնարկումներն ապահովելու համար։

15. Պարտավորեցնել աշխատավորների դեպուտատների շրջանային ու քաղաքային սովետների գործկոմներին՝ շրջանային գերատեսչություններին ենթակա արդյունաբերության կառավարման համար 1941 թվի փետրվարի 15-ից սկսած կազմակերպել արդկոմբինատներ։ Երևան և Լենինական քաղաքներում ստեղծել երկուական կոմբինատ, այդ թվում՝ մեկական կոմբինատ բնակչության կենցաղային կարիքների սպասարկման գծով։

16. Հանձնարարել Հայկական ՍՍՌ Տեղ-



արդժողկոմատին ու Սննդարդժողկոմատին և Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին կից՝ Շինանյութերի արդյունաբերության գլխավոր վարչությանը, աշխատավորների դեպուտատների շրջանային ու քաղաքային սովետների գործկոմներին տեխնիկական օգնություն ցույց տալ արդկոմբինատների կազմակերպման և լայն սպառման արտադրանքի մշակման ասպարեզում։

17. Արդկոմբինատների արդյունաբերության ֆոնդային նյութեր մատակարարելու գործը դնել Հայկական ՍՍՌ Տեղական արդյունաբերության ժողկոմատի Տեղարդմատաի վրա։

18. Պարտավորեցնել քաղսովետների, շրջսովետների գործկոմներին և արհեստագործական կոոպերացիային՝ հատուկ ուշադրություն նվիրել տեղական արդյունաբերության և արհեստագործական կոոպերացիայի ձեռնարկություններում մշակվող արտադրանքի որակին, հասնելով այն բանին, որ լայն սպառման առարկաները լինեն դիմացկուն, օգտագործման տեսակետից հարմար, իրենց ձևով գեղեցիկ և արտադրությամբ էժան։

***

Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետը և Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմը գտնում են, որ ՍՍՌՄ Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշումը՝ «Տեղական հումքից լայն սպառման ապրանքների և պարենամթերքի արտադրությունն ավելացնելու ձեռնարկումների մասին», որը քաղաքական ու տնտեսական խոշորագույն նշանակություն ունի մեր երկրի համար, մի նոր հուժկու խթան կծառայի լայն սպառման ապրանքների և պարենամթերքների արտադրությունը զարգացնելու ասպարեզում։

Տեղական արդյունաբերության և արհեստագործական կոոպերացիայի կազմակերպման ու պլանավորման նոր կարգը, որը վերացնում է արտադրության և ապրանքների օգտագործման կենտրոնացված պլանավորման պրակտիկան, ձեռնարկությունների ֆինանսավորման բացառիկ բարենպաստ պայմանները, տեղական արդյունաբերության և արհեստագործական կոոպերացիայի արտադրանքի գները սահմանելու կարգը, ինչպես նաև տեղական սովետական օրգաններին լայն իրավունքներ տրամադրելը մեծ հնարավորություններ են ստեղծում



տեղական հումքային ու վառելիքային ռեսուրսների օգտագործման հիման վրա լայն սպառման ապրանքների ու պարենամթերքի արտադրությունն ամեն կերպ ավելացնելու գործում նախաձեռնություն ցուցաբերելու համար։

Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետը և Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմը պարտավորեցնում են քաղսովետների ու շրջսովետների գործկոմներին, Հայաստանի Կ(բ)Պ շրջկոմներին՝ պարտիական ու սովետական կազմակերպություններում և տեղական արդյունաբերության ու արհեստագործական կոոպերացիայի աշխատողների համար լայնորեն քննարկել ու պարզաբանել ՍՍՌՄ Ժողկոմսովետի և ՀամԿ(բ) Պ Կենտկոմի 1941 թվի հունվարի 9-ի որոշումը, Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետի առաջադրանքների հիման վրա կոնկրետ ձեռնարկումներ մշակելով հիշյալ որոշումը կենսագործելու ուղղությամբ։

Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետը և Հայաստանի Կ(բ) Պ Կենտկոմը պարտավորեցնում են շրջսովետների ու քաղսովետների նախագահներին, Հայաստանի Կ(բ) Պ քաղկոմների և շրջկոմների քարտուղարներին անձամբ զբաղվել քաղաքներում և շրջան-

ներում տեղական հումքից լայն սպառման ապրանքների ու պարենամթերքի արտադրության տեղական արդյունաբերության և արհեստագործական կոոպերացիայի ձեռնարկությունների համար համապատասխան ղեկավարների ու մասնագետների ընտրության հարցերով, ամենօրյա վերահսկողություն սահմանելով այս որոշումն անշեղորեն կենսագործելու նկատմամբ։

Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետը և Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմը գտնում են, որ ՍՍՌՄ Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշումը՝ «Տեղական հումքից լայն սպառման ապրանքների ու պարենամթերքի արտադրությունն ավելացնելու ձեռնարկումների մասին», քաղաքներում և շրջաններում սովետական ու պարտիական օրգանների աշխատանքի մեջ պետք է առաջացնի արմատական շրջադարձ դեպի տեղական արդյունաբերության ու արհեստագործական կոոպերացիայի զարգացման, տեղական հումքից լայն սպառման ապրանքների ու պարենամթերքի արտադրությունն ամեն կերպ ավելացնելու հարցերը։

Պարտավորեցնել քաղսովետների ու շրջսովետների գործկոմներին և արհեստագործական կոոպերացիայի ռեսպուբլիկական



օրգաններին՝ մինչև 1941 թվականի փետրվարի 20-ը, իսկ հետագայում յուրաքանչյուր ամիս, Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմին և Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին հաշվետվություններ ներկայացնել լայն սպառման ապրանքների ու պարենամթերքի արտադրությունն ավելացնելու ուղղությամբ ձեռք առնված միջոցների և այս որոշման կատարման ընթացքի մասին։

Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետի նախագահ՝

**Ա. ՓԻՐՈՒԶՅԱՆ**

Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի քարտուղար՝

**ԳՐ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**

# ՂԵԿԱՎԱՐԵԼ ԿՈԼԽՈԶՆԵՐԻ ԵԿԱՄՈՒՏՆԵՐԻ ԲԱՇԽՄԱՆ ԳՈՐԾԸ

Կոլխոզի եկամուտների բաշխումը, դա՝ քաղաքական և տնտեսական մեծ կարևորություն ունեցող գործ է։ Այն պահանջում է պարտիական և սովետական կազմակերպությունների անդուլ ղեկավարություն ու լուրջ ուշադրությունը, որպեսզի եկամուտների բաշխումը կատարվի խստորեն՝ ելնելով գյուղատնտեսական արտելի Կանոնադրության պահանջներից։

Հատուկ ուշադրություն պետք է դարձնել գյուղատնտեսական արտելի անբաժանելի ֆոնդեր ստեղծելու և դրանց համալրելու վրա։ Անբաժանելի ֆոնդերը, դա՝ հասարակական տնտեսության հիմքն են։ Նրանց աճի և համալրման գլխավոր աղբյուրը հանդիսանում է կոլխոզի ընդհանուր կանխիկ եկամուտներից, գյուղատնտեսական արտելի Կանոնադրության 12-րդ հոդվածի սահման-



ներում նախատեսնված, ամեն տարի կատարվող մասնահանումները։ Անբաժանելի ֆոնդի համար կատարվող այս մասնահանումները պետք է կատարվեն միայն այն բանից հետո, երբ կոլխոզն արդեն լրիվին կատարել է իր բոլոր պարտականությունները պետության հանդեպ և փոխանցել է Գյուղբանկին երկարաժամկետ վարկերի հերթական մուծումը։

Անբաժան ֆոնդերի համալրման համար կանխիկ եկամուտներից կատարվող սահմանված մասնահանումների ապահովումը դա՝ պարտիական և սովետական կազմակերպությունների կարևոր խնդիրն է։

Անհրաժեշտ է անբաժան ֆոնդերի համալրմանը գնացող կանխիկ միջոցների ծախսման սահմանված կարգը ճշտորեն պահպանել։ Այս մասնահանումները խիստ որոշված նպատակ ունեն։ Նրանք, ինչպես ասված է Կանոնադրության մեջ, գնում են «գյուղատնտեսական գործիքների և անասունների գնման համար, շինարարական նյութերի ձեռք բերման համար, դրսից վերցրած շինարարության վրա աշխատող բանվորներին վճարելու համար» և հասարակական տնտեսության ուրիշ կապիտալ ծախսերի համար։

Երկարաժամկետ վարկերի հերթական մուծումները Գյուղբանկին, չեն կարող կատարվել անբաժան ֆոնդերի հաշվից, ինչպես մտածում են ոմանք. օրինակ՝ «Պարտիյնոյե ստրոյիտելստվո» ժուրնալի 1940 թ. №12-ում զետեղված «Ճիշտ բաշխել կոլխոզի եկամուտները» հոդվածում, այլ կատարվում է առաջնահերթ կերպով, արտելի կանխիկ եկամուտներից։

Մինչդեռ շատ կոլխոզներում կան դեպքեր, երբ անբաժան ֆոնդերի համալրման կանխիկ մասնահանումները սխալ են ծախսվում։ Մոտերս Դնեպրոպետրովյան, ՈՒԿՐ. Կ(բ)Պ մարզկոմն ստուգելով անբաժան ֆոնդերի առաջացման իրադրությունը՝ Կրրիվոյ Ռոգյան գյուղական և Զկալովի շրջանային կոլխոզներում հայտնաբերեց գյուղատնտեսական արտելի Կանոնադրության 12-րդ հոդվածի խախտման մի շարք փաստեր։ Շատ կոլխոզներ 1938-39 թ. թ. համար չեն մուծել անբաժանելի ֆոնդերը հարյուր հազարներով գումարներ և չեն վերականգնել այդ չմուծված գումարներն անգամ 1940 թ. եկամուտների բախշման ժամանակ։ Մի շարք կոլխոզներ այդ մասնահանումները ոչ-նշված նպատակին են օգտագործել (գյուղատնտեսական մեքենա-



ների ընթացիկ վերանորոգման համար, մանր ինվենտարի ձեռք բերման համար և այլն)։

Նույնանման փաստեր գոյություն ունեն նաև մյուս մարզերի, երկրների, ռեսպուբլիկաների մի քանի կոլխոզներում։

Դա հետևանք է այն բանի, որ տեղական պարտիական և սովետական օրգանները ոչ-բավարար կերպով են ղեկավարում կոլխոզների եկամուտների բաշխման գործը։

Պարտիական, սովետական կազմակերպությունները պարտավոր են եկամուտների բաշխման աշխատանքներն անմիջականորեն վերցնել բոլշևիկյան անդուլ վերահսկողության տակ, ամեն օր ղեկավարելով այդ գործը, հասնել այն բանին, որպեսզի յուրաքանչյուր կոլխոզ ճշտորեն կատարի գյուղատնտեսական արտելի Կանոնադրությունը։ Եկամուտների ճիշտ բաշխումը կապահովի կոլխոզների հասարակական տնտեսության նոր վերելքը, կօժանդակի կոլխոզներին՝ փառնանացանքին բոլշևիկորեն նախապատրաստվելու համար։

---

# ԻՆՉՊԵՍ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԵԼ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅԱՆ ՏԱՐԵԿԱՆ ՀԱՇՎԵՏՎՈՒԹՅՈՒՆԸ

Սխալ է ենթադրել, թե հաշվետվություն-
ների ուսումնասիրությունը, դա միայն հաշ-
վապահների և Գլխավոր Վարչությունների
գործն է: Պարտիական կազմակերպու-
թյունների ղեկավարները, եթե նրանք իրա-
պես ցանկանում են գիտենալ իրենց ձեռ-
նարկությունների էկոնոմիկան, պարտավոր
են զբաղվել տարեկան հաշվետվություննե-
րի ուսումնասիրությամբ: Այն մարդկանց
քննադատող հայացքի տակ, որոնք կարող
են թվերի արանքից զգալ կյանքի բաբա-
խյունը, ում հայտնի է տնտեսական հաջո-
ղությունների և ձախողությունների բոլոր
ուղիները, ապա այդպիսի մարդկանց հա-
մար տարեկան հաշվետվությունները լեզու
կառնեն և շատ բան կպատմեն:

Ընթերցողներից յուրաքանչյուրը հաշվե-
տվությանը մոտենում է իր պահանջներով,
պատասխան է փնտրում իրեն հետաքրքր-
րող հարցերին: Բայց այդպիսի պատաս-



խաններ տալու համար, հարկավոր է գի-
տենալ, ինչպե՞ս օգտվել տարեկան հաշ-
վետվություններից:

Ներկա հոդվածում մենք կպատմենք տա-
րեկան հաշվետվությունների «ընթերցման»
ամենադյուրին մեթոդների մասին:

Ծանոթ.— Այս հոդվածի ընթերցման ժա-
մանակ խորհուրդ է տրվում ձեռքի տակ ու-
նենալ ձեռնարկության 1940 թ. տարեկան
հաշվետվության լրացրած ձևերը: Հոդվածում
չենք տալիս հաշվետվության ձևերի նկա-
րագրությունը, որովհետև ենթադրվում է,
որ, արդեն մի շարք տարիների ընթացքում
համարյա անփոփոխ մնացած այդ ձևերի
կառուցվածքը բոլորին ծանոթ է:

Արդյունաբերական հիմնարկության 1940
թվի տարեկան հաշվետվությունը բաղկացած
է 27 միօրինակ, հիմնականում՝ հաշվապա-
հական տեղեկագրերից (կամ ինչպես
անվանում են՝ ձևերից) և մինչև 10 «տեխ-
նիկա-արտադրական ցուցանիշների» ձևե-
րից:

Ի՞նչպես ընտրություն անել ձևերի այդպի-
սի առատության մեջ: Ինչի՞ց սկսել: Ինչ-
պիսի՞ հետևողականությամբ կատարել ու-
սումնասիրությունը: Այս բոլոր հարցերին
պետք է տալ պարզ պատասխաններ: Ահա
կարևորները դրանցից.

1. Տարեկան հաշվետվության ձևերի ուսումնասիրության ժամանակ կարիք չկա ղեկավարվել նրանց հերթականությամբ։ Մասնավորապես նպատակահարմար չէ սկսել № 1 ձևի քննությունից («Եզրափակիչ բալանս»), որովհետև բալանսը, որպես տնտեսական ընդհանուր ցուցանիշ, որպես «հիմնարկության հայելի» միայն այն ժամանակ իրականապես կըմբռնվի, երբ նրա օգնությանը դիմվի հիմնարկության աշխատանքի քանակական և որակական փոփոխությունները արտահայտող ձևերի ուսումնասիրությունից հետո միայն։

2. Հաշվետվության ձևերը չի կարելի ուսումնասիրել, առանձնացրած, առանց իրար հետ փոխադարձ կապելու։ Հիմնարկության էկոնոմիկայի հանգուցային հարցերի հետևողական ուսումնասիրության պրոցեսում ճիշտ կլինի, եթե բոլոր այդ ձևերը դասավորել հետևյալ կարգով.—

ա) ձևեր, որոնք բնորոշում են արտադրական ծրագրի կատարումը։

բ) Ձևեր, որոնք ցույց են տալիս արտադրական ծախսերը և ինքնարժեքի փոփոխումը՝ պլանի և անցյալ տարվա համեմատությամբ։

գ) Ձևեր, որոնք արտահայտում են ար-



տադրանքի իրացման պլանի կատարումը և հենց դրանով՝ հիմնարկության շահավետության պլանը։

դ) Ձևեր, որոնք հնարավորություն են տալիս ուսումնասիրել հիմնարկության ֆինանսական գործունեությունը և նրա բալանսը։

Ընդսմին հայտնաբերվում է, որ միևնույն հաշվետվության ձևերը կարող են գտնվել 2—3, և երբեմն էլ վերևում թված բոլոր չորս կոմբինացիաներում։ Այստեղ ոչինչ չկա զարմանալի, որովհետև հիմնարկության հաշվետվությունն իրենից ներկայացնում է ոչ թե թվատախտակների մեխանիկական միացումը, այլ միաձույլ ներքին մի միասնություն։

3. Հաշվետվության ձևերի կառուցվածքը միակերպ չէ. դրանցից մի քանիսը պարունակում են փաստերի միայն լոկ արձանագրությունները, մի քանիսը՝ ավելի հարուստ են և բացում են ընթերցողի առաջ, լիովին կամ մասնակիորեն, իրենց մեջ արտահայտված տնտեսական երևույթների բուն էությունը։

Բավական մեծ հետաքրքրություն է իրենից ներկայացնում առանձին հաշվետվական ձևերի մեջ գտնվող բազմապիսի «տե-

դեկանքները», որոնք կարևոր տեղեկություն-
ներ են պարունակում: Սակայն այդ հաշ-
վետվական տախտակներից «ամենահասա-
րակներն» անգամ վերափոխվում են, երբ
համեմատության մեջ ենք դնում նրանց, ու-
րիշ տախտակների թվերի հետ: Շատ աղյու-
սակներ ստանում են արդեն նոր պարզա-
բանում:

Ահա մի քանի իլյուստրացիաներ. դիրեկ-
տորը հպարտանում է (և հաճախ ոչ առանց
հիմքի) պլանի քանակական ցուցանիշների
կատարման ասպարեզում ձեռք բերած իր
հաջողություններով: Նա տվել է 10—20—30
տոկոսով ավելի արտադրանք, քան առա-
ջադրանքով է նախատեսված եղել. չի մո-
ռացվել նաև ինքնարժեքը, այն իջեցված է
պլանային դիրեկտիվներին համապատաս-
խան և անգամ ավելին: Այս ամենը վաղուց
արդեն հայտնի է առանց հաշվետվության էլ:
Թվում է, թե դրանից ավելի այլևս ոչինչ
չկա: Սակայն կան մի շարք մոմենտներ,
որոնք կարող են արմատական ուղղումներ
մտցնել: Մենք ի նկատի ունենք այն դեպ-
քերը, երբ հիմնարկությունն զգալի չափով
կատարելով իր պլանը, սակայն մեղանչում
է առաջադրված ասորտիմենտի դիմաց
և նոր, ավելի գնահատելի տեսակների փո-



խարեն, շարունակում է խոտենալով կերպով
արտադրել վաղուց արդեն յուրացված և
հնացած արտադրանք, կամ մի այլ դեպ-
քում. հիմնարկությունն իջեցնում է առաջ-
նակարգ արտադրանքի արտադրությունը և
ավելացնում է երկրորդ, երրորդ տեսակի
արտադրանքի արտադրությունը:

Այստեղ արդեն տարեկան հաշվետվու-
թյունը ցույց կտա, թե ինչին է այդ բանը
հանգեցնում: Գնորդներն իրենց բողոքն են
արտահայտում, նրանք հրաժարվում են
վճարել իրենց հասցեին ուղարկված ոչ-
լիարժեք, ոչ-ստանդարտ և ոչ-պիտանի ապ-
րանքների համար: Բալանսում հանդես են
գալիս դժվարամարսելի հոդվածներ. «ապ-
րանքներ՝ չվճարված գնորդների կողմից»,
«ապրանքներ, որոնք գտնվում են գնորդնե-
րի մոտ՝ ի պահպանություն ակցեպտից
հրաժարվելու պատճառով», «վիճելի պարտ-
քեր» և այլն: (Ակցեպտը դա՝ գնորդ-ձեռ-
նարկության գրավոր համաձայնությունն է՝
կատարելու հաշվի վճարում. ձևակերպվում
է՝ հաշիվ-ֆակտուրայի վրա «ակցեպտի է
ենթարկված» շտամպ դնելով, որի վրա ստո-
րագրում են լիազորված անձինք): Պահեստ-

ներում գտնվող ապրանքների մնացորդները սկսում են խիստ ավելանալ և անգամ՝ գերազանցել նորմաներից։ Իրացման պլանը, ճիշտ է, գերակատարված է, սակայն վաճառքի տեմպերը շեշտակիորեն հետ են մնում արտադրանքի չափերից։ Այդ պատճառով էլ հիմնարկության շահույթը տարվա վերջին՝ լինում է ոչ-շատ բարձր, ինչպիսին խոստանում էին արտադրական ծրագրի գերակատարման ցուցանիշները։ Հենց նույն պատճառով էլ ոչ-այնքան փայլուն է նաև դիրեկտորական ֆոնդի կատարման պատկերը։ Հաջողությունները մեր առջև են, սակայն նրանք կարող էին լինել ավելի մեծ։ Եվ ահա, հենց այդ չօգտագործված հնարավորությունների մասին է որ տարեկան հաշվետվությունը կարող է մեզ վկայել։

Տարեկան հաշվետվության մեջ արտադրական և ֆինանսական ցուցանիշների կապըն հատկապես վառ կերպով է ի հայտ գալիս։ Բանից դուրս է գալիս, որ ամենալավ արտադրական իրադրության պայմանների առկայության դեպքում անգամ չի խանգարում խորհրդակցել հաշվետվության հետ։ Բանից դուրս է գալիս, որ վազելով քանակական ցուցանիշների հետևից, կա-



րելի է դադարել տնտհաշվարկի մասին հոգ տանելուց», ինչի մասին զգուշացնում էր դեռ ընկեր Մոլոտովը։

Կարելի է մեջ բերել մի շարք օրինակներ, որոնք ապացուցում են, որ տարեկան հաշվետվությունը, ինչպես և զգալի չափով ընթացիկ հաշվետվությունը, հիմնարկության աշխատանքի շատ փաստեր ցույց են տալիս այլ լուսաբանությամբ, քան այդ թվում է առաջին հայացքից։

Պարտիական աշխատողների համար տարեկան հաշվետվությունը կարող է դառնալ հարուստ, և հաճախ շատ անսպասելի հայտնությունների աղբյուր, որոնք թույլ են տալիս նոր լուսաբանությամբ անալիզի ենթարկել արտադրության ասպարեզում պարտիական կազմակերպության աշխատանքները։

***

Ի՞նչպիսի տեղեկություններ կարելի է քաղել հիմնարկության տարեկան հաշվետվությունից։ Որպես հաշվետվության ելակետային ձև, որի տվյալներով որոշվում է արտադրական ծրագրերի կատարման չափը,

դա հանդիսանում է № 8 ձևը («արտադրանք»)։ Այդ ձևում բերվում են պատրաստի արտադրանքի բաց թողման պլանի կատարման տվյալները, տեղեկություններ՝ թերավարտ արտադրության մնացորդների փոփոխության մասին (1926—27 թ. թ. անփոփոխ գներով) և տեղեկություններ կոմունալ սպասարկումների ու աշխատանքի մասին։

№ 8 ձևի այսպիսի կառուցվածքը հնարավոր է դարձնում լիակատար կերպով որոշել պլանի կատարման բնույթը, ինչպես և նրա առանձին տարրերի կատարման բնույթը։ Շատ հաճախ պարզվում է, որ գերպլանային արտադրանքի տոկոսներն իրենց ծագումով պարտավոր են ո՛չ այնքան պատրաստի ապրանքների բաց թողմանը, որքան անսպիտի հոդվածին, ինչպիսին է «կոմունալ սպասարկումներ ու աշխատանքներ»։

Ուսուցանելի է № 8 ձևի նաև մյուս երեսը — «Արտադրանքը բնական արտահայտությամբ»։ Նա հնարավոր է դարձնում որոշել, թե ո՞րքան և ի՞նչ տեսակների նըկատմամբ է մեղանչել հիմնարկությունը պլանով առաջադրված տարողիմենտից։



Այստեղ պարտիական ընկերներին կներկայանա հետևյալ պատկերը. անցյալ տարվա համեմատությամբ պլանը նախատեսնում է հին տեսակի, տեխնիկապես ավելի քիչ կատարելագործված արտադրանքի կրճատում՝ արդիականացրած կամ թե օգտագործությունից այլ պատճառով դուրս մնացած արտադրանքի փոխարինումով։ Իսկ հիմնարկությունը ոչ միայն պահպանում է այս հրահանգը, այլ և գերակատարում է պլանը՝ հենց հատկապես հին արտադրանքի հաշվին, քանի որ հին արտադրանքը վաղուց յուրացված է և արտադրության տեսակետից առանձին դժվարություններ չի ներկայացնում։

Արտադրության մեջ նոր մտցվող արտադրանքների հետ մեկտեղ, որոնք հետևապես ժողովրդատնտեսական մեծ արժեք են իրենցից ներկայացնում, միաժամանակ առկա է նաև պլանի բավականաչափ զգալի թերակատարում։ Ահա, ինյուստրացիայի համար դաշգահաշինության գործարաններից մեկի 1939 թվի տարեկան հաշվետվության № 8 ձևից մի հատված.

| ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ԱՆՎԱՆՈՒՄԸ | Անցյալ տարվա արտադրանքը | Արտադրանքը՝ ըստ պլանի | Փաստացի արտադրանքը |
|---|---|---|---|
| | Հ ա տ ե ր ո վ | | |
| Օղային գլաններ 300 միլիմետրանոց . | 395 | 250 | 411 |
| Շաղափափամփուշտ № 6 . . . . . . . | 5625 | 4700 | 5734 |
| Ճախարակագործային փամփուշտ «Փոր-կարդ» 200 միլիմետրանոց . . . . . | 738 | 500 | 988 |
| Ցրեչերային մամլակներ 110 միլիմետրա-նոց . . . . . . . . . . . . . . . . | 1589 | 1050 | 1200 |
| Ճախարակագործային փամփուշտ 165 մի-լիմետրանոց . . . . . . . . . . . | 143 | 1000 | 582 |
| Ցրեչերային մամլակներ 180 միլիմետրա-նոց . . . . . . . . . . . . . . . . | 35 | 400 | 280 |
| Արտանետրոնական մամլակներ . . . | 62 | 800 | 605 |
| Օղային գլաններ 132 միլիմետրանոց . | — | 200 | 174 |

Ինչպես տեսնում ենք, ձեռնարկությունը ոչ-այնքան բարեխիղճ կերպով է հաշվի նստում պլանային առաջադրանքների հետ և նրանց մեջ մտցնում է իր ուղղումները, ընթանում է նվազագույն դիմադրության ուղիով, չի յուրացնում նոր արտադրանքի արտադրությունը: Բնական է, որ պարտիական աշխատողը չի կարող անտարբերությամբ անցնել այսպիսի թվերի կողքով, այլ պետք է ավելի խորը կերպով հետաքրքրվի շեղումների և բաց թողնվող արտադրանքի որակի կատարելագործման ցանկության բացակայության արմատական պատճառներով:

Բայց № 8 ձևը միայն բացում է ուսումնասիրությունը. նրա թվերի էությունը դառնում է միանգամայն հասկանալի այն բանից հետո միայն, երբ ուսումնասիրվում է տարեկան հաշվետվության № 9 («աշխատանքի պլանի կատարումը»), № 6 («ապրանքային արտադրանքի ինքնարժեքը»), № 5 («արտադրության ծախսերը»), № 16 («հաշվետվության՝ կադրերի պատրաստման ծախսերի մասին») ձևերի տվյալները, ինչպես նաև տեխնիկա-արտադրական ցուցանիշների հատուկ հաշվետվության մի քանի

ձևերի տվյալները, մասնավորապես՝ «նոր արտադրությունների յուրացումը» ձևը։ Այստեղ պարունակվող տեղեկությունների ֆոնի վրա շատ վառ կերպով ցուցահանվում են այն պատճառները, որոնք հապաղեցրել են կամ օժանդակել արտադրանքի պլանի կատարմանը և գերակատարմանը։ Կարելի է գտնել, լրացուցիչ արտադրանքը հետևանք էր աճած աշխատանքի արտադրողականության, թե՞ նա պարզապես պայմանավորված էր բանվորների քանակի մեխանիկական ավելացումով։

Այնուհետև պարզ կլինի, թե ո՞րքան է ձախողվել արտադրությունն այնպիսի բացասական հանգամանքների հետևանքով, ինչպիսիք են՝ խոտանը, պատվերների ուշացումը կամ կատարման դադարեցումը, նոր արտադրությունների թույլ յուրացումը, պարապուրդները և սարքավորման ոչ-լրիվ բեռնվածությունը։

Հենվելով այսպիսի տեղեկությունների վրա, հաջողվել է, օրինակ, ծանր արդյունաբերության մի ձեռնարկության գծով հաշվել, (որն իր 1939 թ. արտադրական պլանները գերակատարել էր 18,5 տոկոսով), որ այդ աճի 2,9 տոկոսն է միայն աշխատանքի արտադրողականության բարձրացման



հետևանք հանդիսանում, իսկ մնացած 15,7 տոկոսն ընկնում է նոր ներգրավված բանվորների հաշվին։ Այնուհետև պարզվել է, որ աշխատանքի լավ կազմակերպման առկայության և խոտանի կրճատման դեպքում, ձեռնարկությունը (անգամ արտադրության գոյություն ունեցող տվյալ պայմաններում), հնարավորություն ուներ գերակատարել պլանը լրացուցիչ 5—6 տոկոսով ևս։

Եթե ուշադրությամբ անալիզի ենթարկենք № 1 («եզրափակիչ բալանս»), № 17 («Հաշվետվություն՝ իրացման մասին») ձևերը, և վերջապես, № 20 ձևը («շահույթների և վնասների հաշիվ»), ապա հնարավոր կլինի որոշ չափով ճիշտ պարզել, թե ինչպես է ազդում հիմնարկության ֆինանսական դրության և նրա շահավետության վրա փաստական ասորտիմենտի մեղանչումը՝ պլանային առաջադրանքի նկատմամբ։ Այս եզրակացությունները երբեմն կարող են անսպասելի թվալ անգամ հիմնարկների ղեկավարների համար։

***

Հիմա անցնենք հաշվետվության ինքնարժեքի պլանի կատարումը բնորոշող ձևերին։ Դրանց մեջ կենտրոնական տեղը գրավում

և № 6 ձևը («ապրանքային արտադրանքի ինքնարժեքը»)։ Նրա տվյալները ցույց են տալիս ո՛չ միայն ինքնարժեքի ընդհանուր իջեցումը կամ աճը (դրամական արտահայտությամբ և տոկոսներով), այլև հնարավորություն են տալիս որոշելու, թե ինչպիսի արտադրանքի խմբերի և կալկուլյացիոն հոդվածների հաշվին են կատարվել նմանօրինակ փոփոխությունները։ Այդ բանը հնարավոր է դառնում, շնորհիվ № 6 հաշվետվության ձևի հատուկ կառուցվածքին, որի մեջ հաշվետու տարում բաց թողնված ապրանքային արտադրանքի ողջ արտադրական ինքնարժեքը ցույց է տրվում — ամբողջությամբ և առանձին էլեմենտներով — երեք ուղղությամբ՝ ըստ հաշվետու տարվա պլանային ինքնարժեքի, ըստ հաշվետու տարվա փաստական ինքնարժեքի և ըստ նախորդ տարվա միջին-տարեկան ինքնարժեքի։

Մեքենաշինական արդյունաբերության հիմնարկներում, որտեղ հաշվետվության № 6 ձևի կառուցվածքը որոշ չափով այլ է, քան արդյունաբերության մյուս ճյուղերում, կարելի է պարզ հաշվումների միջոցով որոշել նաև, թե ի՞նչ չափով առանձին վերցրած, նախորդ տարվա հետ համեմատած՝



արտադրանքը և հաշվետու տարում առաջին անգամ բաց թողնված արտադրանքն ազդել են ողջ ապրանքային արտադրանքի ինքնարժեքի վրա։

№ 6 ձևի ետևի մասում գտնվող բազմապիսի «տեղեկանքները» հնարավոր են դարձնում որոշել այն ազդեցությունը, որը տեղի է ունենում հումքի, նյութերի, վառելիքի, գների փոփոխման, ծախսերի մակարդակի վրա, երկաթուղային և ջրային տրանսպորտի տարիֆների փոփոխությունների մակարդակի վրա և հատկապես խոտանից ունեցած կորուստների վրա, այսինքն՝ պատճառներ, որոնք չեն կախված ձեռնարկությունից։

№ 6 ձևի հետ օրգանապես կապված է № 7 ձևը, որը կազմվում է այնքան վարիանտներով, որքան ձեռնարկությունն արտադրանքի հիմնական տեսակներ է բաց թողնում (հաշվետվությունը սովորաբար կցվում է 4—5 կալկուլյացիա)։ Հաշվետվական կալկուլյացիաները տալիս են պատկերացում արտադրանքի առանձին տեսակների ինքնարժեքի դինամիկայի մասին և, որը հատկապես կարևոր է, նրանք հնարավոր են դարձնում վերլուծել № 6 ձևի գումարային ցուցանիշները։ Շատ հաճախ այս ձևերի տվյալների համեմատության ժամա-

*նակ հայտնաբերվում է, որ ինքնարժեքի իջեցման վերջնական տվյալն իր ծավալով պարտական է վաղուց արդեն յուրացված արտադրանքի պլանի խոշոր գերակատարումից առաջացած բավականաչափ մեծ խնայողությանը, որը ծածկում է ավելի նոր տեսակների արտադրանքից առաջացած գերածախսը։*

*Մի շարք հաշվետվության ձևեր օգնում են լավ ըմբռնելու № 6, №7 ձևերում պարունակվող տվյալները։ Դրանց թվին են պատկանում ցեխային և ընդհանուր գործարանային, այդ թվում նաև ոչ-արտադրական, ծախսերի տեղեկագրերը (№ 12, № 13 ձևերը), արտադրության վրա կատարվող ծախսերի տեղեկագիրը (ձև № 5), աշխատանքի պլանների կատարման ձևերը (վառելանյութերի բալանսը և էլեկտրոէներգիայի բալանսը) ու վերջապես, մի շարք ձևեր՝ տեխնիկա-արտադրական ցուցանիշների խմբից։*

*Դիտելով այս թվական տվյալների հիշյալ սերիան, պարտիական աշխատողը հնարավորություն է ստանում վերլուծելու ինքնարժեքի վրա ազդեցություն ունեցող այնպիսի բացասական երևույթները, ինչպիսիք են՝ աշխատավարձի գերածախսը*



*(հատկապես «պարապուրդներ և արտաժամային» հոդվածով), մեծաքանակ ավելցուկները, վառելիքի գերածախսը և էլեկտրոէներգիայի վատնումը, պահեստային տնտեսության վատ կազմակերպման ու ցեխերում վատ հսկողության սահմանելու, կամ թե հիմնարկի կողմից պայմանագրային կարգապահության խախտումների հետևանքով առաջացող կորուստները։*

*Ոչ-արտադրական ծախսերի այս խմբին պետք է լուրջ ուշադրություն դարձվի։ Քիչ չեն դեպքերը, երբ կորուստներն այս հոդվածներով (որովհետև դրանք ամենաիսկական կորուստներ են, չնայած որ մտցվում են ինքնարժեքի մեջ) հիմնարկության արտադրության ռացիոնալիզատորացման ասպարիզում ձեռք բերված հաջողությունները հավասարեցնում են զերոյի և առնվազն՝ զգալիորեն կրճատում են ինքնարժեքի իջեցման տոկոսները։*

*Հաշվետվության ընթերցման ժամանակ անհրաժեշտ է նկատի ունենալ, որ հիշված կորուստները փաստորեն համարյա միշտ էլ ցույց են տրվում նվազեցված, քանի որ այնպիսի հոդվածներ, ինչպիսիք են՝ «նյութական արժեքների պակասորդներ», «վճարված տույժեր և տուգանքներ» և այլն, մրտ-*

ցվում են ոչ-արտադրական ծախսերի վերջնական գումարում միայն որպես վերջնական սալդո, այսինքն՝ որպես այն տարբերությունը, որն առաջանում է նյութական ավելցուկները և ստացված տուգանքները հանելուց հետո։

***

Հաշվետվության ձևերի երրորդ խումբը հասկացողություն է տալիս, թե ձեռնարկությունն ինչպե՞ս է կատարել իր ընթացիկ տարվա իրացման և կուտակումների պլանը։

Կողմնորոշման համար այստեղ հիմք են ծառայում № 17 և № 20 ձևերը։ Դրանցից առաջինը պարունակում է տեղեկություններ ո՛չ միայն ապրանքային զանգվածի ուղղության ու վաճառքի չափերի մասին, այլև ցույց է տալիս դրան զուգընթաց ֆինանսական արդյունքները։ Երկրորդ ձևը, պարունակելով հիմնարկության ընթացիկ տարվա եկամուտներն ու կորուստները, միաժամանակ ի դերև է հանում այն պատճառները, որոնք ազդում են վերջնական արդյունքների սալդոյի՝ զուտ շահույթի և դեֆիցիտի վրա։

Ընդսմին, պարտիական աշխատողը կա-



րող է շատ «խոցելի վերքեր» հայտնաբերել. նա կտեսնի, թե ինչպե՞ս է հաշվել ձեռնարկության, իրացումից և արտադրական խնայողությունից գոյացած, եկամուտները՝ ժամկետը երկարացրած և անհուսալի պարտքերի դուրս գրման ու ռեզերվավորումից առաջացած կորուստների, բնակարանային տնտեսության նախահաշվի գերածախսերի և վաճառքի համար ոչ-պիտանի մթերքների ոչնչացման ազդեցության տակ. (օրինակ՝ Ստալինի անվան ավտոգործարանում անցյալ տարվա միայն 10 ամիսների ընթացքում բնակարանային տնտեսության գծով գերածախսը կազմում է 942 հազար ռուբլի)։

Վերջինը հատկապես վերաբերում է լայն սպառման ապրանքներ բաց թողնող ձեռնարկություններին. այսպես օրինակ՝ Նոգինսկու գրամաֆոնային պլաստինկաներ արտադրող գործարանը, ինչպես այդ երևում է նրա 1938 թ. տարեկան հաշվետվությունից, 64.000 ռուբլու վնաս է կրել, ոչ-գեղարվեստական պլաստինկաների ոչնչացման հետևանքով, իսկ նախորդ տարում կրել էր 158.000 ռ. վնաս։

Պարտիական աշխատողի աչքերի առջևից

կանգնեն նաև բազմապիսի «պատահական» եկամուտներ, մի մասը որոնցից նրա մոտ կառաջացներ միայն ափսոսանքի զգացմունք. նրանք կանգնեն, որպես հիմնարկ-ձեռնարկների հաշվառման և ֆինանսների վատ դրվածքի պերճախոս վկայություն։

Այդպիսիք են օրինակ, այն եկամուտները, որոնք առաջանում են ժամկետն անցած կրեդիտորային չպահանջված պարտքերից, որոնք շատ հիմնարկ-ձեռնարկություններում հաշվվում են տասնյակ հազար ռուբլիներով։

***

Հաշվետվության ձևերի վերջին կատեգորիան կազմում են այն ձևերը, որոնք խմբվում են հիմնարկության տարեվերջի բալանսի շուրջը (ձև № 1)։ Բալանսում վառ կերպով արտահայտվում են հիմնարկության աշխատանքի բոլոր հաջողություններն ու թերությունները։ Ծանոթանալով արտադրական ցուցանիշների հետ, արդեն դժվար չէ հետաքննել նրանց ազդեցությունը ֆինանսական ցուցանիշների վրա։

Եթե հաշվետվության նախորդ ձևերի քննարկությունը հայտնաբերեց, որ արտադրության ասպարեզում ո՛չ ամեն բանն է



բարեհաջող, ապա հեշտ կլիներ հասկանալ, թե ինչո՞ւ խախտված են բալանսում նյութական արժեքների պլանային նորմատիվները, ի՞նչից են ծայր առել բալանսում հիմնարկության համար այդքան տհաճ հոդվածներ, ինչպիսիք են՝ «ժամկետին չվըճարված պետբանկի վարկեր», կամ «մատակարարներ ըստ չվճարված հաշիվ-ֆակտուրաների» (հաշիվ-ֆակտուրան, դա՝ ապրանքի վաճառքը հաստատող փաստաթուղթն է), թե ինչո՞ւ են խիստ կրճատվել կանխիկ դրամարկղերը։

Հենց հատկապես, այդպիսի պատկեր հայտնաբերվեց ժողկոմատներից մեկի հաշվետվությունն անալիզի ենթարկելու ժամանակ (ընդ որում հաշվետվությունը կազմված էր ո՛չ թե մեկ տարվա, այլ 1940 թ. 7 ամիսների համար միայն)։ Այդ ժամկետում խոտանից գոյացած կորուստները ժողկոմատի հիմնարկություններում կազմել են 50 միլիոն ռուբլի, որոնց թվում ոչ-արտադրական ծախսերը՝ 18 միլիոն ռուբլի, ներդրումներ՝ ոչնչացված կամ դադարեցված պատվերների գծով՝ 32,3 միլիոն ռուբլի։

Այս և մի շարք այլ արտադրական թերությունների հետևանքը եղել է այն, որ չնայած պետության ֆինանսական օգնու-

թյանը, բալանսում տեղ էին գտել ժամկե-տը երկարացված պարտքեր՝ պետբանկին և մատակարարներին՝ 101 միլիոն ռուբլու սահմաններում, առաջացել էր 29 միլիոն ռուբլու վնաս, դրամական միջոցների խիստ կրճատում և այլն։

Միանգամայն պարզ է, որ հակառակ դեպքում, պատկերն այլ կլիներ— բարձր շահույթ, ժամկետը երկարացված ընթացիկ պարտավորությունների լիակատար բացակայություն, շրջանառության միջոցներով նորմալ ապահովում. այս ամենն օրինաչափորեն կապված են արտադրական լայն ցուցանիշների հետ։

Իսկ՝ № 1 ձևը պարունակում է այնքան թվով առանձին-առանձին գումարներ, որ ծանոթությունը նրանց հետ ընթերցողին տեղյակ է դարձնում հիմնարկ-ձեռնարկի ֆինանսական աշխատանքի բազմաթիվ, ինչպես դրական, այնպես էլ բացասական կողմերին, մանավորապես, եթե հարատևորեն այդ տվյալները կապվեն արտադրական աշխատանքի ցուցանիշների հետ։

№ 1 ձևի կառուցվածքը, որում տրվում է հիմնարկի տարեսկզբի և տարեվերջի բալանսների համեմատությունը և բացի դրանից, որպես մի երրորդ շարք— ակտիվի



շրջանառության միջոցների և պասիվի առաջնահերթ պարտավորությունների նորմատիվների սյունակը— արմատապես հեշտացնում է բալանսն ուսումնասիրող անձնավորության խնդիրը, թույլատրում է նրան կողմնորոշվել այն փոփոխությունների մեջ, որոնք տեղի են ունեցել ձեռնարկության զույքային միջոցների և նրանց աղբյուրների կառուցվածքում։

Եզրափակիչ բալանսը, որը պարունակում է մոտ երկու հարյուր հոդվածներ, նրա ցուցանիշների մեջ լավագույն կերպով կողմնորոշվելու համար, բաժանված է 4 հիմնական խմբերի.

ԱԿՏԻՎՈՒՄ

1. ԽՈՒՄԲ Ա.— Հիմնական և վերացական միջոցներ։
2. ԽՈՒՄԲ Բ.— Նորմավորվող միջոցներ (սեփական և վարկավորված)։
3. ԽՈՒՄԲ Գ.— Կապիտալ վերանորոգման միջոցներ։
4. ԽՈՒՄԲ Դ.—Միջոցներ հաշվարկներում և այլ ակտիվներում։

ՊԱՍԻՎՈՒՄ

1. ԽՈՒՄԲ Ա.— Ֆոնդեր, երկարաժամկետ վարկեր և նրանց հավասարեցված հոդվածներ։

2. ԽՈՒՄԲ Բ.— Կարճաժամկետ բանկային վարկեր, ըստ նորմավորվող պաշարների (ի լրացումն սեփական շրջանառության միջոցների)։

3. ԽՈՒՄԲ Գ.— Կապիտալ վերանորոգման ֆինանսավորում։

4. ԽՈՒՄԲ Դ.— Կրեդիտորական պարտքեր (բացի բանկի նպատակային վարկերից)։

ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆ.— Պասիվի և ակտիվի «Ա» խմբերի տարբերությունը որոշ ուղղումներով հավասար է ձեռնարկության սեփական շրջանառության միջոցների գումարին, որը ցույց է տրվում բալանսի պասիվում, հատուկ սյունակում։

Հոդվածների վերջին խումբը հատուկ ուշադրության է արժանի, որովհետև նրանցում թաքնված են այնպիսի գումարներ, (անգամ ամենաառողջ ձեռնարկություններում), որոնք պահանջում են վճռական կրճատում կամ անգամ լիակատար ոչնչացում բալանսից։ Այդպիսիք են.

ԱԿՏԻՎՈՒՄ՝

1. Դեբիտորներ, ըստ պակասորդների և վատնումների։

2. Դեբիտորներ, ըստ պրետենզիաների։

3. Հատուկ ֆոնդերի գերածախս։



4. Ներքին հաշվարկներ շինարարության հետ։

ՊԱՍԻՎՈՒՄ՝

1. Պետբանկի վարկերը՝ չվճարված ժամանակին։

2. Մատակարարներ, ըստ չվճարված հաշիվ-ֆակտուրաների։

3. Մատակարարներ, ըստ չֆակտուրագրված ապրանքառաքումների։

4. Վիճելի պարտքերի ռեզերվ և

5. Պարտքեր ֆինժողկոմատին, ըստ շրջանառության հարկերի և շահույթներից կատարվող մասնահանումների հաշվարկների։

Անհրաժեշտ է մանրամասնորեն ուսումնասիրել նաև ակտիվի «Բ» խումբը, համեմատելով նյութական արժեքների նորմատիվները բալանսի համապատասխան հոդվածների փոփոխությունների հետ։ Մանավորապես օգտակար է կանգ առնել այնպիսի հոդվածների վրա, ինչպիսիք են՝ «օժանդակ նյութեր» և «ցածրարժեք ու շուտ մաշվող առարկաներ», որովհետև այստեղ նորմատիվների զգալի գերակշռության և ներքին միջոցների մոբիլիզացիայի կարգով ավելորդ պաշարների կրճատման առկայության պատկերը բավականին տիպիքական է։

Անհրաժեշտ է նաև կանգ առնել «Թերակատար արտադրություն» հոդվածի վրա։ Այստեղ կապը բաց թողնման և իրացման տվյալների հետ, հատկապես անհրաժեշտ է, որովհետև փորձը ցույց է տվել, որ «թերակատար արտադրություն» հոդվածի գերպլանային աճը՝ բալանսում, շատ հաճախ նշանավորում է բաց թողնման և իրացման պլանների արմատական ձախողումը, (հետեվապես և կուտակումների իջեցում)։

Ահա մի փոքրիկ օրինակ. № 1 ժամացույցների գործարանի առ 1-ը հունվարի 1940 թ. բալանսում թերակատար արտադրության գումարը կազմում է 5172 հազար ռուբլի՝ պլանային 3.500 հազար ռուբլի նորմատիվի դիմաց, այսինքն՝ համարյա մեկ և կես անգամ ավելի։ Համեմատությունը՝ № № 1, 17 և 20 ձևերի ցուցանիշների հետ, ցույց տվեց, որ բաց թողնման պլանը կատարվել է ընդամենը 85 տոկոսով, իրացումը՝ 27 միլիոն ռուբլու փոխարեն կազմել է 24,4 միլիոն ռուբլի, շահույթը՝ 17,8 միլիոն ռուբլու փոխարեն՝ 13,8 միլիոն ռուբլի։

Բալանսի լրացուցիչ հաշվետվության ձևերը թույլ են տալիս ավելի խորը կերպով կողմնորոշվել՝ հիմնական միջոցների,



նրանց վրա կատարված ծախսերի (№ № 2, 23, 25 և 10 ձևեր) կանոնադրական ֆոնդի (№ 3 ձև), հատուկ ֆոնդերի (№ 4 ձև) և այլ հոդվածների կառուցվածքում և դինամիկայում։

***

Այս է արդյունաբերական ձեռնարկության տարեկան հաշվետվության բովանդակությունը։ Գործարանային հաշվապահության աշխատակիցները միշտ էլ օգնության կգան պարտիական կազմակերպության քարտուղարին, եթե նա տարեկան հաշվետվությունն ուսումնասիրելիս որևէ դժվարությունների հանդիպի։ Հաշվետվության ուսումնասիրումը պահանջում է նստելու համառություն, քրտնաջանություն, տոկունություն, հետևողականություն. սակայն նրա վրա ծախսված ժամանակը հետագայում կհատուցվի հարյուրապատիկ անգամ։ Տարեկան հաշվետվությունն արժանի է այն բանին, որպեսզի նրանով լրջորեն զբաղվեն։

---

Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

